Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 2 ՀՈՒՆՎԱՐ 1959

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։*




# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆ Է


Գ. ԳԱԼՈՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու


*Կոմունիստական պարտիան սովետական հասարակարգի ղեկավար և ուղղություն տվող ուժն է։ Պարտիայի ուժի և հզորության աղբյուրը մասսաների հետ ունեցած նրա անխզելի կապի մեջ է։ Նա շարունակաբար ամրապնդում է իր կապերը մայր ժողովրդի հետ, հաշվի առնում նրա կարծիքը՝ պետական, տնտեսական, քաղաքական և կուլտուրական խոշոր պրոբլեմներ լուծելիս, հենվում ժողովրդական մասսաների փորձի վրա։ Պարտիան անսահմանորեն հավատում է ժողովրդի ստեղծագործ ուժին, նրա մեջ է տեսնում սոցիալիստական պետության հզորության երաշխիքը, կոմունիստական հասարակարգի կառուցման երաշխիքը։*

*ՍՄԿԿ XX համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում սովետական ժողո-*





վուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ կենսագործելով համագումարի պատմական որոշումները ձեռք է բերել այնպիսի հոյակապ նվաճումներ, որոնք մեր երկրին այժմ հնարավորություն են ընձեռում հսկայական թռիչք գործելու դեպի կոմունիզմի լուսաշող գագաթները, որը մեզ համար այլևս հեռավոր ապագա չէ։

Կոմունիստական պարտիայի ձեռնարկած միջոցառումների շնորհիվ հատկապես վերջին տարիների ընթացքում մեր ժողովուրդը փայլուն նվաճումներ է ձեռք բերել սոցիալիստական արդյունաբերության, գյուղատնտեսության ու կուլտուրայի ասպարեզում, աննախընթաց կերպով բարձրացել է մեր ժողովրդի կենսամակարդակը։

Այժմ ավելի քան երբեք պարզ է բոլորին, թե որքան խոր և կենսական նշանակություն ունեցան մեր երկրի զարգացման համար ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները, որոնց կենսագործման համար հսկայական ջանքեր գործադրեց Սովետական Միության Կոմունիստական պարտիայի լենինյան Կենտրոնական Կոմիտեն։

Սովետական ժողովուրդը օրինական հպարտությամբ ընդունեց ՍՄԿՊ Կենտկոմի 1958 թվականի Դեկտեմբերյան պլենումի



որոշումը՝ վերջին հինգ տարիների ընթացքում գյուղատնտեսության զարգացման արդյունքների և գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա ավելացման մասին։ Այդ հարցի կապակցությամբ պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումում ընկեր Ն. Ս. Խրուշչովի տված զեկուցումը Կոմունիստական պարտիայի քաղաքական հաշվետվությունն էր ժողովրդի առաջ, պարտիայի լենինյան գլխավոր գծի անշեղ կիրառման փայլուն հանրագումարը։ Այս տարիների ընթացքում հատկապես ցայտուն կերպով դրսևորվեց Կոմունիստական պարտիայի՝ որպես մեր հասարակարգի ղեկավար և ուղղություն տվող ուժի դերը։

Միայն սոցիալիզմի երկրում, որտեղ Կոմունիստական պարտիան կազմակերպում և գլխավորում է ժողովրդական մասսաների խանդավառությունը, հնարավոր էր իրագործել պատմական և իրոք ռևոլյուցիոն նշանակություն ունեցող այնպիսի մի սխրանք, ինչպիսին մի քանի տարվա ընթացքում ավելի քան 36 միլիոն հեկտար խամ ու խոպան հողերի յուրացումն էր։ Այս և մի շարք այլ միջոցառումների շնորհիվ 1958 թվականին երկրում հացահատիկի համախառն բերքը հասավ 8,5 միլիարդ փթի, 1953 թվա-

կանի մակարդակը գերազանցելով 69 տոկոսով։

Գյուղատնտեսության շեշտակի վերելքի գործում պարտիայի քաղաքականության անշեղ կիրառումը իր դրական արդյունքները տվեց նաև մեր ռեսպուբլիկայում։ Վերջին տարիների ընթացքում ռեսպուբլիկայի աշխատավորները գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու, պետությանը բամբակի, շաքարի ճակնդեղի, հացահատիկի, մսի, կաթի և բրդի վաճառքի պլանները կատարելու և գերակատարելու գործում խոշոր հաջողություններ ձեռք բերեցին, որոնց համար ՍՍՌՄ Գերագույն Սովետի Հրամանագրով Հայկական ՍՍՌ պարգևատրվեց Լենինի շքանշանով։

Այս ամենը արդյունք են պարտիայի կողմից իրագործված կազմակերպական-քաղաքական և տնտեսական խոշոր միջոցառումների, որոնք կրկին անգամ ցույց են տալիս, թե որքան ճշմարիտ ու հեռատես էր մեր պարտիայի լենինյան Կենտրոնական Կոմիտեն, երբ 1953 թվականի Սեպտեմբերյան պլենումում առաջ քաշեց գյուղատնտեսության շեշտակի վերելքի հարցը, և ընդհակառակն որքան խղճուկ էր կյանքից և ժողովրդից կտրված Մալենկովի, Կագանո-



վիչի, Մոլոտովի, Բուլգանինի և Շեպիլովի հակապարտիական ֆրակցիոն խումբը, որը հանդես էր գալիս պարտիայի գլխավոր գծի դեմ և փորձում էր խոչընդոտել ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումների կենսագործմանը։

Գյուղատնտեսության շեշտակի վերելքն ապահովելու հետ միաժամանակ պարտիան ձեռնարկեց մի շարք լուրջ միջոցառումների արդյունաբերության կառավարման և ղեկավարման գործը բարելավելու ուղղությամբ։

Զարկ տալով սոցիալիստական արդյունաբերության հիմքի՝ ծանր արդյունաբերության առավել զարգացմանը, պարտիան միաժամանակ մեծ հոգատարություն է ցուցաբերում սոցիալիստական էկոնոմիկայի մյուս ճյուղերի հզոր վերելքը կազմակերպելու նպատակով։

Վերջին հինգ տարիների ընթացքում մեր երկրում կառուցվեցին և գործարկվեցին մոտավորապես 12 հազար խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, բնակարանային շինարարության ծավալը կազմեց 216 միլիոն քառակուսի մետր, կապիտալ խոշոր ներդրումներ արվեցին գիտության և կուլտուրայի ասպարեզում։ Սովետական ամե-

նառաջավոր գիտությունը իր փայլուն նվաճումներով պարտական է Կոմունիստական պարտիային, նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեին, որը ամենալայն հնարավորություններ է ընձեռել սովետական գիտնականներին՝ աշխարհահռչակ գործեր կատարելու համար։ Սովետական միջմոլորակային տիեզերական հրթիռը, որը դարձավ արեգակի շուրջը պտտվող առաջին արհեստական մոլորակը՝ Կոմունիստական պարտիայի ու ստեղծագործ սովետական ժողովրդի հանճարի խորհրդանիշն է։

Կոմունիստական պարտիայի իմաստուն քաղաքականության հետևանքով ստեղծվեց մեր երկրի նյութական այն հզոր բազան, որի վրա հենվելով պարտիան կերտեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների յոթնամյա պլանը։ Այդ պլանի կենսագործումը մեր երկիրը ընդհուպ կմոտեցնի ՍՍՌՄ տնտեսական հիմնական խնդրի՝ մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ կապիտալիստական առավել զարգացած երկրներին հասնելու և անցնելու խնդրի գործնական լուծմանը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI արտահերթ համագումարը



լսեց և քննարկեց ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցումը «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թ. թ. կոնտրոլ թվերի մասին»։ Այդ զեկուցման թեզիսները, ինչպես հայտնի է համաժողովրդական քննարկման ենթարկվեցին մեր երկրում։ Սովետական առաջին յոթնամյակը ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման լայն ծրագիրն է, որի հիմնական պրոբլեմը՝ մեր երկրի էկոնոմիկայի զարգացման մինչև այժմ չտեսնված արագ տեմպերի ապահովումն է և կապիտալիզմի հետ խաղաղ մրցակցության ժամանակաշրջանում ժամանակի մաքսիմում շահումը։ Յոթնամյակի գլխավոր խնդիրը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա հզոր վերելքն է՝ ծանր արդյունաբերության առավել աճի բազայի վրա և ժողովրդի կենսամակարդակի անընդհատ բարձրացումն ապահովող նյութական բազայի ստեղծումը։ Բավական է նշել, որ 1965 թվականին ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1958 թվականի համեմատությամբ կաճի մոտավորապես 80 տոկոսով, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը՝ 85—88 տոկոսով, սպառման

առարկաների արտադրությունը՝ 62—65 տոկոսով։

Յոթնամյակը կնշանավորվի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի որակական խոր փոփոխությամբ. հսկայական չափերով կավելանա չուգունի, պողպատի, գունավոր մետաղների, վառելանյութի (հատկապես նավթի և գազի) արտադրությունը, որը վճռական էտապ կհանդիսանա սովետական երկրի էլեկտրիֆիկացման լենինյան պլանի կենսագործման ուղղությամբ։ Առաջիկա տարիներում աննախընթաց կերպով կբարձրանա աշխատանքի արտադրողականությունը, հզոր աճ կապրեն արտադրողական ուժերը, անհրաժեշտ նախադրյալներ կստեղծվեն սոցիալիստական արտադրահարաբերությունները կոմունիստականով փոխարինելու համար, սոցիալիստական գյուղատնտեսության նոր հզոր վերելքը հնարավորություն կտա լիովին բավարարել սովետական մարդկանց պահանջմունքները գյուղատնտեսական մթերքների նկատմամբ։

Կոմունիստական պարտիան այլ շահ, բացի ժողովրդի շահերից չունի։ Յոթնամյա պլանով պարտիան նախատեսում է սովետական ժողովրդի կենսամակարդակի հետագա զգալի բարձրացում.



կկառուցվի ավելի քան 15 միլիոն բնակարան՝ 650—660 միլ. քառ. մետր ընդհանուր տարածությամբ, իսկ գյուղական վայրերում՝ 7 միլիոն բնակելի տուն, երկիրը կանցնի 30—35 ժամանոց բանվորական շաբաթի՝ երկու հանգստյան օրով, որը կլինի աշխարհում ամենակարճ բանվորական շաբաթն ու օրը։ Կբարձրանա միջին և ցածր վարձատրություն ունեցող աշխատողների աշխատավարձը (որի մինիմումը 270—350-ից կհասնի 500—600 ռուբլու), ինչպես նաև կբարձրանա կենսաթոշակների մինիմումը։ Բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը միջին թվով կբարձրանա 40 տոկոսով, կոլտնտեսականների եկամուտները ևս 40 տոկոսով։ Աշխատավարձի ռեալ եկամուտները կավելանան ինչպես գների իջեցման, այնպես էլ աշխատավարձի բարձրացման միջոցով։ Մեր երկիրը կունենա աշխարհում բնակչության ամենաբարձր կենսամակարդակը։ Ժողովրդի բարեկեցության նկատմամբ նման հոգատարություն հնարավոր է միայն սոցիալիզմի երկրում, որտեղ հասարակայնության ղեկավար և ուղղություն տըվող ուժը Կոմունիստական պարտիան է։

Սովետական առաջին յոթնամյակը մեր երկրի ժողովրդական տնտեսության զար-

գացման՝ հեռանկարային 15-ամյա պլանի մի մասն է, որով (15-ամյա պլանով) նախատեսվում է արդյունաբերության վճռական ճյուղերի արտադրանքի ծավալը մեծացնել ավելի քան երկու-երեք անգամ։

Յոթնամյակի կենսագործումը նոր պայծառ հեռանկարներ է բացում նաև մեր ռեսպուբլիկայի առաջ։ Օրերս ավարտվեց Հայաստանի Կոմունիստական պարտիայի XX արտահերթ համագումարը, որը լսեց և քննարկեց ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Թովմասյանի զեկուցումը՝ «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին» ՍՄԿՊ XXI համագումարին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսների և Հայաստանի Կոմունիստական պարտիայի խնդիրների մասին։ Ընկեր Թովմասյանի զեկուցման մեջ և համագումարի դելեգատների ելույթներում վառ կերպով դրսևորվեց Կոմունիստական պարտիայի ջերմ հոգատարությունը վերածնված հայ ժողովրդի նկատմամբ։ ՀՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման համար յոթնամյակի ընթացքում ներդրվելու է ավելի քան 12 միլիարդ ռուբլի։ 1965 թվականին 1958 թվականի համեմատությամբ ռեսպուբլիկայի արդյունա-



բերական արտադրանքը կավելանա 2,2 անգամ, էլեկտրաէներգիայի սպառումը 1,8 անգամ, թեթև արդյունաբերության համախառն արտադրանքի ընդհանուր ծավալը՝ 1,7 անգամ, նույնքանով էլ կավելանա սննդարդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը և այլն։ Առավել արագ տեմպերով կզարգանան արդյունաբերության այնպիսի ճյուղեր ինչպիսիք են գունավոր մետալուրգիան, քիմիական, մեքենաշինական, էլեկտրատեխնիկական, սարքաշինական և բազմաթիվ այլ ճյուղեր։

Յոթնամյակի ընթացքում խոշոր վերելք կապրի ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը, որի մասնագիտացումը կիրագործվի առավելապես անասնաբուծության, խաղողագործության և պտղաբուծության ուղղությամբ։

Մեր երկրի տնտեսական և կուլտուրական շինարարության հոյակապ արդյունքները և մեր հսկա քայլերով դեպի կոմունիզմ տանող պլանները վառ կերպով ցույց են տալիս Կոմունիստական պարտիայի ղեկավար դերի և նշանակության է՛լ ավելի բարձրացումը հատկապես այժմ՝ սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում։

# ՀԿՊ XX ԱՐՏԱՀԵՐԹ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

*Այս տարվա հունվարի 10-ից 12-ը Երևանում տեղի ունեցավ Հայաստանի Կոմունիստական պարտիայի XX արտահերթ համագումարը, որը իր օրակարգում ուներ երկու հարց.*

*1. «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին» ՍՄԿՊ XXI համագումարին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսները և Հայաստանի Կոմունիստական պարտիայի խնդիրները, զեկուցող՝ ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Հ. Թովմասյան:*

*2. ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարի պատգամավորների ընտրությունը:*

*Համագումարը, որը անցավ քաղաքական բարձր մակարդակով և գործարար մթնոլորտում, մեծ ոգևորությամբ ու միահամուռ կերպով հավանություն տվեց ՍՄԿՊ XXI համագումարին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներին և նշեց այն առաջնահերթ խնդիրները, որ առաջիկայում պետք է*



*կատարեն ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները:*

*Զեկուցողը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը բնորոշելով որպես ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման տնտեսական ծրագիր, հանգամանորեն պարզաբանեց, որ անցած տասնամյակները համոզիչ կերպով ցուցադրեցին սոցիալիստական հասարակարգի մեծ առավելությունները: Մեր երկրի բանվոր դասակարգը, գյուղացիությունը և աշխատավոր ինտելիգենցիան, դառնալով իրենց բախտի տերը, պատմական կարճ ժամանակամիջոցում, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մեր երկիրը դարձրին հզոր սոցիալիստական պետություն, որն ամբողջ մարդկության համար հարթում է ազատության և երջանկության ուղին:*

*Սովետական ժողովուրդը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, կենսագործելով մեր երկրում սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը, վճռաբար խափանեց այն բոլոր փորձերը, որոնց նպատակն էր կասեցնել մեր առաջընթացը: Երկրի ինդուստրացումը, գյուղատնտեսության կոլեկտիվացումը, շահագործող դասակարգի վերացումը և կուլտուրական ռևոլյուցիան*

ապահովեցին սոցիալիզմի հաղթանակը ՍՍՌՄ-ում։

Մեր երկիրն այժմ ունի նյութական հզոր բազա՝ բազմակողմանիորեն զարգացած արդյունաբերություն, բարձր արտադրողական գյուղատնտեսություն։ Անշեղորեն բարձրանում է աշխատավորների նյութական բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը։ Սովետական իշխանության տարիներին ազգային եկամուտը, որը ժողովրդի կենսամակարդակի գլխավոր ցուցանիշն է, բնակչության մեկ շնչի հաշվով ավելացել է 15 անգամ։

Համագումարին տված ընկ. Ս. Հ. Թովմասյանի զեկուցման մեջ հակիրճ կերպով ամփոփված են մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման գործում ձեռք բերված վիթխարի հաջողությունները և պարզաբանված Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացումը յոթնամյակում։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում մեծ վերափոխումներ տեղի ունեցան էկոնոմիկայի և կուլտուրայի բնագավառում, որոնք նշանավորվեցին ժողովրդի բարեկեցության բուռն աճով։ Այդ կապակցությամբ զեկուցողը կոնկրետ օրի-



նակներ է բերում, թե ինչպես 1958 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը 1913 թվականի արտադրության ծավալը գերազանցեց 54 անգամ։ 1958 թվականին մեր ռեսպուբլիկայում բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությունը 44 տոկոսով ավելի էր, քան Ֆրանսիայում և 10 տոկոսով ավելի, քան Արևմտյան Գերմանիայում՝ 1955 թվականին։

Ռեսպուբլիկայում այժմ յուրաքանչյուր յոթ օրում ավելի շատ արտադրանք է թողարկվում քան ամբողջ 1913 թվականին։ Ռեսպուբլիկայի ծանր արդյունաբերության բոլոր ճյուղերը, բացի պղնձահանքային արդյունաբերությունից, որը արմատապես վերափոխվել է, ստեղծվեցին Սովետական իշխանության տարիներին։ Ռեսպուբլիկայում ստեղծվել են գունավոր մետալուրգիայի ժամանակակից հզոր ձեռնարկություններ։ Փաստորեն նոր է ստեղծվել թեթև ու սննդի արդյունաբերությունը։ 1958 թվականին թեթև արդյունաբերության համախառն արտադրանքը, 1913 թվականի համեմատությամբ, աճեց 43 անգամ, սննդարդյունաբերությանը՝ 20 անգամ, իսկ 1940 թվականի համեմատու-

թյամբ՝ համապատասխանորեն 5,5 անգամ և 2,5 անգամ։

Ռեսպուբլիկայում ժողտնտխորհ ստեղծելը նպաստեց արդյունաբերության ներքին ռեզերվների օգտագործմանը, աճեց աշխատավոր մասսաների նախաձեռնությունը, բարձրացավ արդյունաբերական արտադրանքի աճման տեմպերը։ Դրա շնորհիվ 1958 թվականին ամբողջ ապրանքային արտադրանքի ինքնարժեքի իջեցումից ստացված արտապլանային ընդհանուր խնայողությունը ժողտնտխորհի ձեռնարկություններում կազմեց մոտ 38 միլիոն ռուբլի։

Ձեռք բերած իրենց հաջողություններով արդյունաբերության աշխատողներից ետ չմնացին նաև մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները։ Վերջին հինգ տարում պարտիայի ձեռնարկած միջոցառումների շնորհիվ ապահովվեց գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքը՝ ավելացավ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ 1958 թվականին հացահատիկային կուլտուրաների մեկ հեկտարի բերքատվությունը կազմեց 9,5 ցենտներ, կամ 2,3 ցենտներով ավելի, քան 1953 թվականին։ Բամբակի միջին բերքատվությունը հեկտարից կազմեց 25,1 ցենտ-



ներ, կամ 4,3 ցենտներով ավելի, քան 1953 թվականին։ Յուրաքանչյուր հեկտարից ըստացվեց 248 ցենտներ շաքարի ճակնդեղ կամ 84 ցենտներով ավելի, քան 1953 թվականին։ Հինգ տարվա ընթացքում կոլտնտեսություններում բանջարեղենի արտադրությունն ավելացել է 66,8 տոկոսով, իսկ մեկ հեկտարի բերքատվությունը՝ 2,2 անգամ։ Կարտոֆիլի արտադրությունն ավելացել է 39 ցենտներով, իսկ բերքատվությունը՝ 1,4 անգամ։ 1953 թվականի համեմատությամբ, 1958 թվականին կոլտնտեսություններում խաղողի արտադրությունն ավելացել է 18,1 հազար տոննայով, իսկ պտուղներինը՝ 1,6 հազար տոննայով։ Խաղողի մեկ հեկտարի բերքատվությունը ավելացել է 13,2 ցենտներով, իսկ պտուղներինը՝ 4,1 ցենտներով։ Ծխախոտի մեկ հեկտարի բերքատվությունը 1958 թվականին կազմեց 12,1 ցենտներ, կամ 3,1 ցենտներով ավելի, քան 1953 թվականին։

Անասնաբուծության զարգացման բնագավառում նույնպես ձեռք են բերվել նշանակալի հաջողություններ։ Ավելացել է խոշոր եղջերավոր անասունների, հատկապես կովերի, ինչպես նաև ոչխարների, խոզերի գլխաքանակը և բարձրացել մթերատվությունը։



1958 թվականին ժամկետից շուտ կատարվեց և գերակատարվեց գյուղատնտեսական մթերքների մթերումների պլանները։ 1953 թվականի համեմատությամբ պետությանը ավելի է վաճառվել շաքարի ճակնդեղ՝ 40 տոկոսով, բանջարեղեն՝ 2,9 անգամ, խաղող՝ գրեթե 90 տոկոսով, միս՝ 29,1 տոկոսով, կաթ՝ 94,5 տոկոսով, բուրդ՝ 66,7 տոկոսով, ձու՝ 47,5 տոկոսով։

Վերջին հինգ տարում լուրջ հաջողությունների են հասել մեր ռեսպուբլիկայի սովխոզները։ 1953 թվականի համեմատությամբ սովխոզների կողմից պետությանը անասնաբուծական մթերքների հանձնումն ավելացել է. մսինը՝ 4,2 անգամ, կաթինը՝ 5,1 անգամ, բրդինը՝ 6,1 անգամ, ձվինը՝ 5,1 անգամ։

Վերհիշված հաջողություններն արդյունք են նաև այն բանի, որ մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատատար պրոցեսները անընդհատ մեքենայացվում են։ Միայն վերջին հինգ տարում ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները, սովխոզները և ՄՏ կայանները ստացան 1.257 տրակտոր և 740 կոմբայն։

Մեծ չափերով բարձրացել է գյուղական բնակչության նյութական բարեկեցությունը։



Գյուղատնտեսության ասպարեզում ռեսպուբլիկայի ձեռք բերած հաջողություններն արժանացան պարտիայի և կառավարության բարձր գնահատականին։ 1958 թվականի դեկտեմբերի 29-ին, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հրամանագրով Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան պարգևատրվեց Լենինի շքանշանով։

Ռեսպուբլիկայում բարձր զարգացման է հասել նաև գիտությունը, տեխնիկան և կուլտուրան։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել բնակարանային շինարարության բնագավառում։ Հինգ տարում ռեսպուբլիկայում կառուցվել և բնակչությանն է բաշխվել 911 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, այսինքն՝ գրեթե նույնքան, որքան նախապատերազմյան հնգամյակների բոլոր տարիներին։

Տարեցտարի բարելավվել և բարելավվում է ռեսպուբլիկայի աշխատավորների նյութական բարեկեցությունը։

Խոսելով Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների պլանի մասին, ինչպես զեկուցողը, այնպես էլ ելույթ ունեցողները նշե-

ցին, որ այդ պլանը բխում է լենինյան ազգային քաղաքականությունից, այն ՍՍՌՄ ժողովրդա-տնտեսական պլանի բաղկացուցիչ մասն է և ելնում է ինչպես ՍՍՌՄ-ում, այնպես էլ ազգային ռեսպուբլիկաներում էկոնոմիկայի բոլոր ճյուղերի նոր, հզոր վերելքի, սովետական ժողովրդի կենսամակարդակի հարաճուն բարձրացման համապետական խնդրի պահանջներից։

Առաջիկա յոթնամյակում ռեսպուբլիկայի արդյունաբերության ստրուկտուրայի մեջ տեղի կունենան որակական նշանակալի փոփոխություններ։ Նախ քիմիական արդյունաբերության մեջ առաջին անգամ որպես նախնական հումք կօգտագործվի բնական գազը, ապա լայն զարգացում կստանա սինթետիկ թելերի, պլաստմասսայի և սինթետիկ այլ նյութերի արտադրությունը։ Նախատեսված է 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքի արտադրությունն ավելացնել 2,2 անգամ։ Արդյունաբերության աճի տարեկան միջին տեմպը կկազմի ավելի քան 12 տոկոս։ 1959—1965 թվականներին արդյունաբերության համախառն արտադրանքի յուրաքանչյուր տոկոսի աճի բացարձակ մեծությունը կկազմի 68 միլիոն



ռուբլի՝ 1952—1958 թվականների 33 միլիոն ռուբլու փոխարեն։

Առավել արագ տեմպերով կզարգանա գունավոր մետալուրգիան։ 1958 թվականի համեմատությամբ, 1965 թվականին գունավոր մետալուրգիայի համախառն արտադրանքի ծավալը կմեծանա գրեթե 3 անգամ։ Յոթնամյակում քիմիական արդյունաբերության զարգացման համար նախատեսված են վեց անգամ ավելի շատ կապիտալ ներդրումներ, քան անցած յոթ տարում։

Յոթնամյակում նախատեսվում է ջերմաէլեկտրակայանների կառուցումը բնական էժան գազի բազայի վրա։ Բացի այդ, կավարտվի Հայաստանի էներգետիկ սիստեմը եղբայրական Ադրբեջանի հետ կապող էլեկտրահաղորդման գծի շինարարությունը։ Յոթնամյակում էլեկտրաէներգիայի սպառումը կավելանա 1,8 անգամ։

Նույն ժամանակամիջոցում բուռն թափով կզարգանա մեքենաշինությունը։ Մեքենաշինության բոլոր ճյուղերի համախառն արտադրանքը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կաճի 3,5 անգամ։

Յոթնամյակում էլ ավելի կավելանա ժողովրդական սպառման ապրանքների ար-

տադրությունը։ Թեև արդյունաբերության համախառն արտադրանքի ընդհանուր ծավալը, 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կաճի 1,7 անգամ, նույն չափով կաճի նաև սննդի արդյունաբերության համախառն արտադրանքը։

1959—1965 թվականներին նոր և է՛լ ավելի բարձր զարգացման կհասնի մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։ Նախատեսված է արտադրել 366 հազար տոննա հացահատիկ, 1957 թվականի 297 հազար տոննայի փոխարեն, 35 հազար տոննա բամբակ, 1957 թվականի 28,5 հազար տոննայի փոխարեն, 100 հազար տոննա շաքարի ճակնդեղ, 1957 թվականի 87,9 հազար տոննայի փոխարեն, 12 հազար տոննա ծխախոտ, 1957 թվականի 8,8 հազար տոննայի փոխարեն, 231 հազար տոննա խաղող, 1957 թվականի 79,6 հազար տոննայի փոխարեն, 61 հազար տոննա միս, 1957 թվականի 29,1 հազար տոննայի փոխարեն (սպանդանոցային քաշով), 500 հազար տոննա կաթ և այլն։ Մեծ ուշադրություն է դարձվելու կերի արտադրությունն ավելացնելու վրա։ Պահանջվում է բարելավել դաշտավարության ստրուկտուրան, ընդարձակել եգիպտացորենի և խոտաբույսերի ցան-



քատարածությունները, ավելացվելու է կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի, ինչպես նաև խտացրած կերի արտադրությունը։ Մեծ ուշադրություն է դարձվում տոհմաբուծության բարելավման, խոզաբուծության և թռչնաբուծության զարգացման վրա։

Խոշոր աշխատանք է կատարվելու խաղողագործության և պտղաբուծության զարգացման ասպարեզում։ 1965 թվականին, 1957 թվականի համեմատությամբ խաղողի համախառն բերքը կաճի 2,9 անգամ, իսկ պտուղներինը՝ 3 անգամ։ 1959—1965 թվականների ընթացքում կոլտնտեսություններն ու սովխոզները կգցեն 44 հազար հեկտար նոր այգիներ, այդ թվում 24 հազար հեկտար խաղողի։

Համագումարում խնդիր դրվեց կոլտնտեսությունների յոթնամյա պլանների իրականացման առաջին էտապում մրցություն ծավալել 2—3 տարում շրջանի գյուղատնտեսական մթերքների արտադրությունը հասցնել տվյալ շրջանի առաջավոր կոլտնտեսությունների մակարդակին։

Յոթնամյակում ծավալուն աշխատանք է կատարվելու տրանսպորտի և կապի զարգացման, ժողովրդական տնտեսության մեջ

կապիտալ ներդրումներն ավելացնելու ուղղությամբ։

Համագումարը գոհունակությամբ նշեց, որ յոթնամյակում մեծ չափերով բարձրանալու է ժողովրդի բարեկեցությունը և նրա կուլտուրական մակարդակը։ Միայն 1959—1965 թվականներին կկառուցվեն 3 միլիոն 900 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Գյուղում մեծ թվով տներ կկառուցվեն կոլտնտեսականների միջոցներով։ Նախատեսվում է 121 միլիոն ռուբլի ծախսել ջրամատակարարման, 180 միլիոն ռուբլի՝ կոյուղու, 120 միլիոն ռուբլի՝ կենցաղային կարիքների համար, գազիֆիկացման վրա և 141 միլիոն ռուբլի՝ բնակչության կոմունալ-կենցաղային սպասարկման այլ միջոցառումների վրա։

Այդ նույն տարիներին կավելանա բնակչության դրամական եկամուտները։ 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, բանվորների և ծառայողների աշխատավարձը կավելանա 44,7 տոկոսով, գյուղատնտեսական մթերքների վաճառքից կոլտնտեսականների եկամուտները՝ 42,3 տոկոսով, 71,1 տոկոսով կաճեն նպաստներից



և կենսաթոշակներից բնակչության ստացած եկամուտները։

Մինչև յոթնամյակի վերջը մեր երկիրը կունենա աշխարհում ամենակարճ աշխատանքային օրը և ամենակարճ աշխատանքային շաբաթը։ Յոթնամյա պլանի իրականացումից կարճ ժամանակ անց մենք կըհասնենք բնակչության աշխարհում ամենաբարձր կենսամակարդակին։ Եվ դա կլինի սոցիալիզմի համաշխարհային-պատմական հաղթանակը կապիտալիզմի հետ խաղաղ մրցության մեջ։

Համագումարը դրսևորելով Կոմունիստական պարտիայի շարքերի միասնությունը, միաժամանակ դատապարտեց Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի, Բուլգանինի և Շեպիլովի հակապարտիական խմբի քայքայիչ գործունեությունը։

ՀԿՊ XX համագումարը լիովին հավանություն տալով ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներին, ծավալուն որոշում ընդունեց յոթնամյա պլանում առաջադրված պատմական խնդիրները պատվով կատարելու համար։

# ԴՊՐՈՑԸ ՊԵՏՔ Է ՀԱՄԸՆԹԱՑ ՔԱՅԼԻ ԿՅԱՆՔԻ ՀԵՏ

Ս. ԽՈՒԴՈՅԱՆ
Մանկավարժական գիտությունների թեկնածու

Կյանքի հետ դպրոցի կապի ամրապնդման և երկրում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման հարցը վերջերս հատուկ քննարկման ենթարկվեց նաև ՍՍՌՄ Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում, որն այդ առթիվ ընդունեց համապատասխան օրենք:

Դպրոցի և ժողովրդական կրթության ողջ սիստեմի արմատական վերակառուցումը թելադրված է մեր կյանքի պահանջներով և սովետական երկրի առաջընթաց շարժման հեռանկարներով, որոնք այնքան փայլուն կերպով շարադրված են ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ:

Ներկա դպրոցի հիմնական թերությունը



նրա կտրվածությունն է կյանքից, որի հետևանքով երեխաներին տրվող կրթությունը կրում է միակողմանի բնույթ և նրանց վատ է նախապատրաստում ապագա պրակտիկ գործունեության համար: Մինչդեռ, ինչպես նշել է ընկեր Խրուշչովը, դպրոցի ուսումնական ու դաստիարակչական գործունեությունը պետք է այնպես կազմակերպել, որպեսզի բոլոր սովորողները նախապատրաստվեն օգտակար աշխատանքի, դառնան կոմունիզմի ակտիվ կառուցողներ: Դրա համար անհրաժեշտ է ուսուցումը սերտորեն շաղկապել արտադրողական աշխատանքին, դպրոցում սովորելու առաջին իսկ տարիներից երեխաների մեջ դաստիարակել սեր դեպի աշխատանքը, նրանց աստիճանաբար զինել աշխատանքային ունակություններով ու հմտություններով: Միջնակարգ դպրոցի բարձր դասարաններում սովորողները հանրակրթական գիտելիքների ու պոլիտեխնիկական կրթության հետ միասին պետք է ստանան նաև մասնագիտական որոշակի պատրաստություն՝ արդյունաբերության ու գյուղատնտեսության այս կամ այն կոնկրետ բնագավառում արդյունավետ կերպով աշխատելու համար:

Ահա թե ինչու պարտիայի Կենտկոմը և

Սովետական կառավարությունը անհրաժեշտ համարեցին արմատապես վերակառուցել դպրոցի աշխատանքներն ու ժողովրդական կրթության ամբողջ սիստեմը։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընդունած օրենքի համաձայն միջնակարգ կրթությունը բաժանվելու է երկու էտապի։ Առաջին էտապում 7—15 տարեկան բոլոր երեխաները սովորելու են 8-ամյա հանրակրթական աշխատանքային պոլիտեխնիկական դպրոցում։ Ութամյա կրթությունը լինելու է պարտադիր՝ ներկայիս յոթնամյա պարտադիր կրթության փոխարեն։ Ոչ լրիվ միջնակարգ պարտադիր կրթության տևողությունը մեկ տարով ավելացնելը խոշոր նշանակություն կունենա սովորողներին ավելի խոր ու հաստատուն գիտելիքներով զինելու, նրանց պոլիտեխնիկական ու աշխատանքային հմտություններ տալու և հասարակական հանրօգուտ աշխատանքի նախապատրաստելու տեսակետից։

Ութամյա դպրոցն ավարտելուց հետո 15—16 տարեկան բոլոր պատանիներն ու աղջիկները ընդգրկվելու են հանրօգուտ աշխատանքում՝ արդյունաբերության մեջ, կոլտնտեսություններում, սովխոզներում, շինարարական և այլ օբյեկտներում։ Նրանք



կարող են աշխատել և միաժամանակ սովորել, ձեռք բերելով միջնակարգ կրթություն ու զանազան մասնագիտություններ։ Այսպիսով, միջնակարգ կրթությունը իրականացվելու է արտադրողական աշխատանքի հետ ուսուցումը սերտորեն միացնելու հիման վրա։

Միջնակարգ կրթության երկրորդ էտապում կազմակերպվելու են տարբեր տիպի դպրոցներ։ Հիմնականը կլինեն քաղաքներում՝ բանվոր երիտասարդության երեկոյան կամ հերթափոխային, իսկ գյուղերում՝ գյուղական երիտասարդության երեկոյան կամ սեզոնային դպրոցներ, ուսման երեք տարվա տևողությամբ։ Այդ դպրոցներում կսովորեն աշխատող երիտասարդները, օգտվելով իրենց տրված որոշակի արտոնություններից՝ կունենան կրճատ աշխատանքային օր, կամ էլ 2—3 օր ազատ կլինեն արտադրության մեջ աշխատելուց։

Քաղաքներում ու գյուղերում կազմակերպվելու են նաև հանրակրթական աշխատանքային պոլիտեխնիկական դպրոցներ՝ արտադրական ուսուցմամբ։ Այդ դպրոցները սովորողներին կտան լրիվ միջնակարգ կրթություն ու մասնագիտական պատրաստություն և միաժամանակ կապահովեն նր-

րանց ուսման միացումը արտադրական աշխատանքի հետ։

Երիտասարդության մի մասը միջնակարգ կրթություն ձեռք կբերի տեխնիկումներում և միջնակարգ մասնագիտական այլ հաստատություններում։ Կազմակերպվելու են նաև տարբեր տիպի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններ՝ միջին ու բարձր որակի բանվորներ պատրաստելու նպատակով։

Պետք է նշել, որ ոչ մի հիմք չունի այն ընկերների մտավախությունը, ովքեր կարծում են, թե դպրոցի վերակառուցման հետևանքով կարող է իջնել սովորողներին տրվող հանրակրթական գիտելիքների մակարդակը։ Այդպիսի բան տեղի ունենալ չի կարող, այնքան, որքան առանց խոր ու հաստատուն հանրակրթական գիտելիքների, այսինքն՝ առանց մաթեմատիկայի, ֆիզիկայի, քիմիայի, բիոլոգիայի և հումանիտար առարկաների հիմունքների լավ տիրապետման անհնարին կլինի սովորողներին պոլիտեխնիկական և պրոֆեսիոնալ պատրաստություն տալու, նրանց ժամանակակից արդյունաբերության ու գյուղատնտեսության մեջ բեղմնավոր աշխատանքի նախապատրաստելու գործը։



Ընդհանուր կրթությունը անհրաժեշտ է նաև մարդու բազմակողմանի զարգացման և բարձրագույն դպրոց ընդունվելու համար։

Ներկայումս Հայկական Ռեսպուբլիկայի Լուսավորության մինիստրությունը և Դպրոցների գիտահետազոտական ինստիտուտը մշակում են ինչպես ութամյա դպրոցի, այնպես էլ միջնակարգ կրթության երկրորդ էտապի տարբեր տիպի դպրոցների ուսումնական պլանների ու ծրագրերի նախագծերը։

Նախատեսվում է ութամյա դպրոցի ուսումնական պլաններում մտցնել մի շարք էական փոփոխություններ։ Ամենից առաջ կավելացվեն մայրենի և ռուսաց լեզուներին հատկացվող ժամերը։ Դա հնարավորություն կտա ութամյակում հիմնականում ավարտել մայրենի լեզվի ուսումնասիրությունը, ինչպես նաև զգալի չափով բարելավել ռուսաց լեզվի դասավանդումը։ Հավանական է, որ 5—8-րդ դասարաններում, գրական ընթերցանության փոխարեն մտցվի գրականության բավականաչափ մատչելի դասընթաց, որի հիմնական խնդիրներից մեկը կլինի՝ ավելի մեծ չափով, քան այդ եղել է մինչև այժմ, նպաստել սովորողների կողմից մայրենի լեզվի տիրապետմանը։

Ութամյա դպրոցը պետք է տա լիովին գրագետ մարդիկ, ուստի նոր ծրագրերը կազմելիս ավելի մեծ ուշադրություն կդարձվի երեխաների բանավոր ու գրավոր խոսքի կուլտուրայի զարգացման հարցերին։ Մինչև այժմ գերագնահատվել է քերականության դերը և, ընդհակառակն, թերագնահատվել է ընթերցանությունը, ինքնուրույն ստեղծագործական բնույթի գրավորների, պատմելու և գործնական գրությունների ուսուցման կարևորությունը։ Այս ամենը հանգեցրել է այն բանին, որ աշակերտները անգիտակցաբար, մեխանիկորեն բերանացի են անում քերականական կանոնները, բայց դրանցից չեն կարողանում օգտվել իրենց բանավոր ու գրավոր խոսքը կառուցելիս։ Վերակառուցվող դպրոցում քերականությունը պետք է առավել գործնական եղանակով ուսուցանվի, այն նպատակ լինելուց պետք է դառնա լեզվի գործնական ուսուցման միջոց։

Հատուկ աշխատանք պետք է տանել այն ուղղությամբ, որպեսզի մեր երեխաները իրոք տիրապետեն ռուսաց լեզվին, կարողանան գրավոր ու բանավոր ձևով արտահայտել իրենց մտքերը, օգտվեն հանրամատչելի գրականությունից։ Մինչդեռ ներկա-



յումս գործող ծրագրերն ու դասագրքերը, ինչպես նաև ռուսաց լեզվի ուսուցման բուն պրակտիկան չեն ապահովում այդ չափազանց կարևոր ու կենսական խնդրի իրագործումը։ Հարկ չկա ապացուցելու, որ հայկական դպրոցներում ռուսաց լեզվի դասավանդման մեջ անհամեմատ ավելի մեծ տեղ պետք է տրվի գործնական ուսուցմանը։

Ութամյա դպրոցում մաթեմատիկայի, ֆիզիկայի, քիմիայի, բիոլոգիայի և աշխարհագրության դասընթացները այնպես են կառուցվելու, որպեսզի սովորողները այդ շատ կարևոր առարկաներից ստանան համեմատաբար ամբողջական գիտելիքներ, որոնք նրանց անհրաժեշտ են ինչպես հետագա կրթությունը շարունակելու, այնպես էլ կյանք դուրս գալու համար։

Ուսուցման առաջին էտապում աշակերտները կուսումնասիրեն նաև ՍՍՌՄ ժողովուրդների պատմությունը, ինչպես նաև հայ ժողովրդի պատմությունը և Հայաստանի աշխարհագրությունը։

Լուրջ ուշադրություն է դարձվելու երեխաների գեղարվեստական ու ֆիզիկական դաստիարակությանը, նրանց առողջության ամրապնդման հարցերին։ Առանձնապես ուժեղացվելու է սովորողների աշխատանքային

դաստիարակության գործը։ Նրանք աշխատանքային հմտություններ ձեռք կբերեն դպրոցական արհեստանոցներում, ուսումնա-փորձնական հողամասերում ու տնտեսություններում, ինչպես նաև արտադրական ու գյուղատնտեսական օբյեկտներում։ Աղջիկները կսովորեն նաև տնարարություն, մի բան, որ մինչև վերջերս անարդարացիորեն թերագնահատված էր մեզ մոտ։

Աշակերտներին աշխատանքային դաստիարակություն տալու, աշխատանքի նըկատմամբ նրանց մեջ սեր զարգացնելու տեսակետից խիստ կարևոր պետք է համարել դպրոցներում ինքնասպասարկման անցնելը։ Այդ աշխատանքն արդեն սկսված է մեր երկրի շատ դպրոցներում և տալիս է միանգամայն դրական արդյունք։

Որո՞նք են լինելու միջնակարգ կրթության երկրորդ էտապի բնորոշ կողմերը։ Ամենից առաջ սովորողներին կտրվեն հանրակրթական այնքան գիտելիքներ, որոնք անհրաժեշտ են բազմակողմանի զարգացած ու կուլտուրական մարդիկ պատրաստելու, ինչպես և բարձրագույն դպրոցներն ընդունվելու համար։ Ահա թե ինչու այդ դպրոցների ուսումնական պլաններում պատշաճ տեղ են գրավելու գրականությունն



ու պատմությունը, ռուսաց լեզուն, մաթեմատիկան, ֆիզիկան, քիմիան և հանրակրթական այլ առարկաները։

Հանրակրթական առարկաների հետ միասին սովորողներին կտրվի նաև տվյալ դըպրոցի հիմնական պրոֆիլին համապատասխան մասնագիտական պատրաստություն։

Միջնակարգ պոլիտեխնիկական դպրոցի սովորողները շաբաթական 2—3 օր աշխատելու են արտադրության մեջ։ Այդ աշխատանքը կարող է կազմակերպվել գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում և այլն։ Այս տեսակետից հատուկ նշանակություն են ստանում գյուղատնտեսական օբյեկտներում աշակերտական արտադրական բրիգադները, որոնք լայն ծավալ են ստացել առանձնապես Ստավրոպոլի երկրամասում, ուսումնա-փորձնական տնտեսությունները, որոնք ծնունդ են առել Ռյազանի մարզում։ Մեր ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում նույնպես կազմակերպված են աշակերտական արտադրական բրիգադներ և ուսումնա-փորձնական տնտեսություններ։

Բոլոր տիպի միջնակարգ դպրոցներում նախատեսվում է մտցնել ընդհանուր տեխնիկական և մասնագիտական առարկաներ։

Քաղաքային դպրոցներում կլինեն մեքենագիտություն, էլեկտրատեխնիկա, գծագրություն և այնպիսի մասնագիտական առարկաներ, որոնք համապատասխանում են տվյալ դպրոցի պրոֆեսիոնալ ուղղությանը։ Գյուղական դպրոցներում կլինեն՝ բուսաբուծության հիմունքները, անասնապահության հիմունքները, գյուղատնտեսական մեքենագիտություն, էլեկտրատեխնիկա և գյուղատնտեսության էլեկտրիֆիկացում, գյուղատնտեսական արտադրության կազմակերպումը և էկոնոմիկան, ինչպես նաև մասնագիտական առարկաներ տվյալ դպրոցի պրոֆիլին համապատասխան։

Վերակառուցվող դպրոցը լայն հեռանկարներ է բաց անում մեր երիտասարդության առջև։ Հանրակրթական պատրաստության հետ միասին նրանք ձեռք կբերեն նաև կոնկրետ մասնագիտություն, որը նրանց հնարավորություն կտա դպրոցն ավարտելուց հետո չընկնել այլևս տատանումների մեջ, այլ անմիջապես գտնել իրենց տեղը կյանքում և առանց որևէ դժվարության աշխատել տնտեսության այս կամ այն բնագավառում, ակտիվորեն մասնակցել կոմունիզմի կառուցման ընդհանուր պայքարին։



ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր ու փաստեր)

Մամուլում արդեն հրապարակված է ՍՍՌՄ Մինիստրների Սովետին առընթեր Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1958 թվականի Պետական պլանի կատարման արդյունքների մասին։ Հաղորդագրության մեջ ամփոփված են այն խոշոր հաջողությունները, որ պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը ձեռք է բերել արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի, կապիտալ շինարարության, ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման ուղղությամբ։

Ահա այդ մասին են խոսում հետևյալ թվերն ու փաստերը։

✪ Արդյունաբերական արտադրության ծավալը 1958 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, աճել է 10 տոկոսով։ Այդ թվում «Ա» խումբը, նախնական տվյալներով, 11 տոկոսով, «Բ» խումբը՝ 7 տոկոսով։

✪ Բոլոր միութենական ռեսպուբլիկաները ժամկետից շուտ կատարեցին համախառն արտադրանքի և արտադրանքի կարևորագույն տեսակների մեծամաս-

նության արտադրության տարեկան պլանները, օրինակ. ՌՍՖՍՌ-ն՝ 104 տոկոսով, Ուկրաինական ՍՍՌ-ն՝ 108 տոկոսով, Բելոռուսական ՍՍՌ-ն՝ 104, Ուզբեկական ՍՍՌ-ն՝ 103, Վրացական ՍՍՌ-ն՝ 105, Հայկական ՍՍՌ-ն՝ 104 տոկոսով և այլն։

✪ 1958 թվականին արտադրվել է չուգուն՝ 39,6 միլիոն տոննա, կամ 1957 թվականի համեմատությամբ, 107 տոկոսով, պողպատ՝ 54,9 միլիոն տոննա, կամ 107 տոկոսով, ածուխ՝ 496 միլիոն տոննա, կամ 107 տոկոսով, նավթ՝ 113 միլիոն տոննա, կամ 115 տոկոսով, գազ՝ 29,8 միլիարդ խորանարդ մետր, կամ 148 տոկոսով, էլեկտրաէներգիա՝ 233 միլիարդ կիլովատ-ժամ, կամ 111 տոսոկով։

✪ Այդ նույն ժամանակ արտադրվել է հանքային պարարտանյութեր՝ 12,4 միլիոն տոննա, կամ 105 տոկոսով, ավտոդողեր՝ 14,4 միլիոն հատ կամ 113 տոկոսով, տուրբիններ՝ 6,6 միլիոն կիլովատ կամ 123 տոկոսով, մետաղահատ հաստոցներ, 138 հազար հատ կամ 106 տոկոսով։

✪ Մեկ տարվա ընթացքում երկիրն ստացավ բեռնատար ավտոներ և ավտոբուսներ՝ 389 հազար հատ կամ 102 տոկոսով, մարդատար ավտոմոբիլներ՝ 122 հազար հատ կամ 108 տոկոսով, տրակտորներ՝ 220 հազար հատ կամ 108 տոկոսով, տրակտորային գութաններ՝ 164 հազար հատ կամ 128 տոկոսով, մագիստրալային ջերմաքարշեր 712 հատ կամ 178 տոկոսով, ցեմենտ՝ 33,3 միլիոն տոննա կամ 115 տոկոսով։



✪ Ժողովրդական լայն սպառման համար արտադրվել է բամբակե գործվածքներ՝ 5 միլիարդ 800 միլիոն մետր կամ 104 տոկոսով, բրդե գործվածքներ՝ 303 միլիոն մետր կամ 107 տոկոսով, կաշվե կոշիկ՝ 356 միլիոն զույգ կամ 112 տոկոսով, միս՝ (առանց կոլտնտեսությունների արտադրածի և բնակչության տնային արտադրածի) 3,4 միլիոն տոննա կամ 108 տոկոս, շաքարավազ՝ 5,4 միլիոն տոննա կամ 121 տոկոսով և այլն։

✪ 1958 թվականին արդյունաբերական ձեռնարկությունները գիտահետազոտական ինստիտուտները և նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունները ստեղծել են ավելի քան 1.600 նոր, կարևորագույն տիպերի մեքենաներ, մեխանիզմներ, ապարատներ և այլ սարքավորումներ։

✪ 1958 թվականին ավելի քան մեկ ու կես միլիոն գյուտարարներ և ռացիոնալիզատորներ արեցին ավելի քան 2 միլիոն 700 հազար առաջարկ։ Ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել է ավելի քան մեկ միլիոն 600 հազար գյուտ և ռացիոնալիզատորական առաջարկ։ Այդ առաջարկների արմատավորումից ստացված խնայողությունը կազմեց ավելի քան 8,5 միլիարդ ռուբլի։

✪ Անցած տարի խոշոր նվաճումներ ձեռք բերվեցին գյուղատնտեսության զարգացման ուղղությամբ։

Ամբողջ երկրում հացահատիկի համախառն բերքը (ամբարված բերքը) կազմեց 8,5 միլիարդ փութ։

*Այդ թվում առավել արժեքավոր պարենային կուլտուրայի՝ ցորենի բերքը՝ 4,6 միլիարդ փութ։ Շաքարի ճակնդեղի համախառն բերքը կազմեց 54,1 միլիոն տոննա, բամբակինը՝ 4,4 միլիոն տոննա, արևածաղկինը՝ 4,5 միլիոն տոննա, կարտոֆիլինը՝ 86,1 միլիոն տոննա, բանջարեղենը՝ 14,3 միլիոն տոննա։*

✪ *1957 թվականի համեմատությամբ հացահատիկի համախառն բերքն ավելացավ 2,1 միլիարդ փթով կամ 33 տոկոսով, իսկ 1953 թվականի համեմատությամբ 3,5 միլիարդ փթով և ավելի քան 700 միլիոն փթով գերազանցեց ամենաբերքառատ՝ 1956 թվականին ստացված հացահատիկի համախառն բերքը։*

✪ *Հացահատիկային կուլտուրաների ընդհանուր բերքի մեջ 1958 թվականին եգիպտացորենի բերքը, չոր հատիկի վերածած, կազմեց գրեթե մեկ միլիարդ փութ կամ 2,3 անգամ ավելի քան 1957 թվականին։*

✪ *1958 թվականին երկրում զգալիորեն բարելավվել է անասնաբուծության վիճակը։ Բոլոր կատեգորիաների տնտեսություններում անասունների գլխաքանակը կազմում է՝ խոշոր եղջերավոր անասուններինը՝ 70,8 միլիոն, որը 1953 թվականի համեմատությամբ աճում է 127 տոկոսով, իսկ 1957 թվականի համեմատությամբ 106 տոկոսով, խոզեր՝ 48,3 միլիոն գլուխ, որը համապատասխանաբար կազմում է 145 տոկոս և 109 տոկոս, ոչխարներ՝ 129,6 միլիոն գլուխ և համապատասխանաբար՝ 130 տոկոս և 108 տոկոս։*



✪ *Վերջին հինգ տարում բոլոր կատեգորիաների տնտեսություններում անասունների գլխաքանակը ավելացել է. խոշոր եղջերավորներինը՝ 15 միլիոն գլխով, այդ թվում կովերինը՝ 8,1 միլիոն գլխով, խոզերինը՝ 15,2 միլիոն գլխով, ոչխարներինը՝ 29,8 միլիոն գլխով։ Ավելացել է նաև թռչունների քանակը։*

✪ *Մսի արտադրությունը (սպանդանոցային քաշով) 1958 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ավելացավ 2 միլիոն 100 հազար տոննայով, կաթինը՝ 21 միլիոն 300 հազար տոննայով, բրդինը՝ 86 հազար տոննայով, ձվինը՝ 7 միլիարդ 400 միլիոն հատով։*

✪ *Կաթի ընդհանուր արտադրությամբ ՍՍՌՄ-ը 1958 թվականին հասավ ԱՄՆ-ին, իսկ յուղի գործարանային և տնային ընդհանուր արտադրությամբ ՍՍՌՄ-ը ԱՄՆ-ից անցել էր դեռ 1957 թվականին։*

✪ *Երկաթուղային տրանսպորտը բեռնափոխադրումների և բեռնաշրջանառության տարեկան պլանը կատարել է ժամկետից շուտ։ 1957 թվականի համեմատությամբ, երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառությունը աճել է 7 տոկոսով։ Կատարվել և գերակատարվել է քարածխի, նավթի և նավթամթերքների, սև մետաղների և այլ կարևոր բեռների փոխադրումների պլանը։*

✪ *Կատարվել և գերակատարվել են նաև ծովային, գետային, օդային և ավտոմոբիլային տրանսպորտների փոխադրումների պլանները։*

✪ *Պետական և կոոպերատիվ կազմակերպություն-*

ների (բացի կոլտնտեսություններից) կապիտալ ներդրումների ծավալը 1958 թվականին կազմել է 235 միլիարդ ռուբլի և 1957 թվականի կապիտալ ներդրումները գերազանցել է 11 տոկոսով։

✪ Անցած տարի գործարկվել են ավելի քան 800 նոր խոշոր պետական արդյունաբերական ձեռնարկություններ։

✪ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ բանվորների և ծառայողների տարեկան միջին թիվը 1958 թվականին կազմել է 54,6 միլիոն մարդ և մեկ տարում ավելացել է 1,4 միլիոն մարդով։

✪ 1958 թվականին ՍՍՌՄ ազգային եկամուտը 1957 թվականի համեմատությամբ, ավելացավ 9 տոկոսով։ Ազգային եկամտի աճը թույլ է տվել բարձրացնել բանվորների, ծառայողների ու գյուղացիների եկամուտները և ապահովել սոցիալիստական արտադրության հետագա ընդլայնումը։

✪ 1958 թվականին բնակչությունը բոլոր վճարումների և արտոնությունների գծով ստացավ պետությունից ավելի քան 215 միլիարդ ռուբլի՝ 1957 թվականի 202 միլիարդ ռուբլու դիմաց։

✪ Կոլտնտեսությունների դրամական եկամուտները 1958 թվականին կազմեցին ավելի քան 130 միլիարդ ռուբլի և 1957 թվականի համեմատությամբ ավելացան մոտավորապես 36 միլիարդ ռուբլով կամ 38 տոկոսով։



✪ Լայն ծավալ է ստացել ապրանքաշրջանառությունը, անցյալ տարի այն կազմել է 667 միլիարդ ռուբլի։ Բնակչությանն ու կոլտնտեսականներին արտադրական ապրանքների վաճառքը աճել է հետևյալ չափերով. ցեմենտ՝ 15 տոկոս, շիֆեր՝ 12 տոկոս, փափուկ ծածկ՝ 11 տոկոս, լուսամուտի ապակի՝ 10 տոկոս։ Վաճառվել է 19 տոկոսով ավելի անտառանյութ և ստանդարտ տներ։

✪ 1958 թվականին ՍՍՌՄ-ում սովորողների թիվը, ներառյալ ուսուցման բոլոր ձևերը, կազմել է ավելի քան 50 միլիոն մարդ, որը նախորդ տարվա համեմատությամբ ավելացել է 880 հազար մարդով։ Այդ ժամանակամիջոցում բացվել են ավելի քան 1.100 նոր միջնակարգ դպրոցներ։ 1958 թվականին միջնակարգ դպրոցն ավարտել և հասունության ատեստատ են ստացել 1 միլիոն 600 հազար մարդ։

✪ 1958 թվականին բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները ավարտել են 840 հազար երիտասարդ մասնագետներ՝ 1957 թվականի 770 հազարի դիմաց։

✪ Երկրում գիտաշխատողների ընդհանուր թիվը 1958 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, ավելացավ համարյա 9 տոկոսով և կազմում էր ավելի քան 280 հազար մարդ, ընդ որում տեխնիկական, ֆիզիկա-մաթեմատիկական և քիմիական գիտությունների բնագավառում գիտաշխատողների թիվը ավելացել է 12 տոկոսով։

✪ Խիստ զարգացում է ստացել կինոն։ Անցյալ տարի երկրի կինոստուդիաները թողարկել են 131 նոր լիամետրաժ ֆիլմեր, այդ թվում 108 գեղարվեստական, 23 խրոնիկալ-դոկումենտալ և գիտա-հանրամատչելի, ինչպես նաև 630 կարճամետրաժ ֆիլմեր։

✪ 1958 թվականի վերջին կինոսարքերի թիվը կազմում էր 77 հազար և նախորդ տարվա համեմատությամբ ավելացել էր 7 հազարով։ Կինոսեանսների հաճախումների թիվը կազմել է 3,3 միլիարդ և 1957 թվականի համեմատությամբ ավելացել է մոտ 300 միլիոնով։

✪ Բարելավվել է բնակչությանը ցույց տրվող բուժսպասարկման գործը։ Հիվանդանոցներում մահճակալների թիվը 1957 թվականի համեմատությամբ աճել է ավելի քան 90 հազարով, մշտական մանկամսուրներում տեղերի թիվը՝ համարյա 110 հազարով, սանատորիաներում մահճակալների թիվը համարյա 8 հազարով, բժիշկների թիվը ավելացել է 16 հազարով։

✪ 1958 թվականին զգալի չափերով ավելացավ բնակարանային շինարարությունը։ Օգտագործման են հանձնվել բնակելի տներ մոտավորապես 68 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ կամ 7 միլիոն քառակուսի մետրով ավելի, քան սահմանված էր պլանով։

✪ Կոլտնտեսականներն ու գյուղական ինտելիգենցիան անցած տարի կառուցեցին ավելի քան 700 հազար բնակելի տուն։

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Կոմունիստական պարտիան մեր բոլոր հաղթանակների կազմակերպիչն է ու ոգեշնչողը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ Կոմունիստական պարտիայի դերի մասին. *Երկեր, հատոր 31, 283—289, Հայպետհրատ, 1952։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին, *(1903—1953)*։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կանոնադրությունը:

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Զեկուցում՝ ՍՄԿԿ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումում վերջին հինգ տարում գյուղատնտեսության զարգացման արդյունքների և գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա ավելացման խնդիրների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի դեկտեմբերի 16-ի համարում։*

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 41-րդ տարեդարձը, *զեկուցում՝ Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

## 2. Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերը *(զեկուցում՝ ՍՄԿՊ XXI համագումարին)*։

## 3. Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի օրը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Ճառ արտասանած «Կարմիր սպայի օրը» *1918 թ. նոյեմբերի 24-ին, Երկեր, հատոր 28, էջ 238—239, Հայպետհրատ, 1951*։

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Նամակ Կազանի գրավման մասնակից կարմիրբանակայիններին, *Երկեր, հատոր 28, էջ 110, Հայպետհրատ, 1951*։

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիան *(Հիմնական Օրենք)*։

Վերջին հինգ տարում գյուղատնտեսության զարգացման արդյունքները և գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա ավելացման խնդիրները, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման առթիվ՝ *ընդունված 1958 թվականի դեկտեմբերի 19-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի դեկտեմբերի 20-ի համարում*։



## 4. Պատվով կատարենք սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Մրցության կազմակերպումը, *Երկեր, հատոր 27, էջ 310, Հայպետհրատ, 1951*։

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ—«ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին» ՍՄԿՊ XXI համագումարին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսները և Հայաստանի Կոմունիստական պարտիայի խնդիրները, *զեկուցում տրված ՀԿՊ XX արտահերթ համագումարում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 11-ի համարում*։

Լիովին կատարել սոցիալիստական պարտավորությունները, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի դեկտեմբերի 14-ի առաջնորդողը*։

Բարձր պարգև, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի դեկտեմբերի 30-ի առաջնորդողը*։

## 5. Սովետական Հայաստանի արդյունաբերությունը յոթնամյակում

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Արդյունաբերության զարգացումը 1959—1965 թվականներին, *ՀԿՊ XX արտահերթ համագումարին տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 11-ի համարում*։

Հայաստանի գունավոր մետալուրգիան և լեռնահանքային արդյունաբերությունը առաջիկա յոթնամյակում, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի դեկտեմբերի 9-ի համարում։*

### 6. Կազմ ու պատրաստ դիմավորենք գարնանացանը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ—Գյուղատնտեսության վերելքը, *ՀԿԿ XX արտահերթ համագումարին տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 11-ի համարում։*

Հայաստանի գյուղատնտեսության զարգացումը յոթնամյակում, *զրույց, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1959 թվականի առաջին համարում։*

### 7. Բարելավենք աշխատանքը ջերմոցային տնտեսություններում

(Օգտագործել տեղական նյութեր)

### 8. Անկորուստ անցկացնենք ծնի կամպանիան, խնամքով աճեցնենք մատղաշը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Ճառ Բելոռուսական ՍՍՌ Գերագույն Սովետի հոբելյանական սեսիայում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 4-ի համարում։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ—Ճառ ռեսպուբլիկայի աշխատավորների ներկայացուցիչների միտինգում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 4-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ




Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ